## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 19
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՏՈՐ ԱՇՈՏ ՇԱԼՈՒՆՑԸ

Այս տարվա գարնան սկզբներին էր։ Սովխոզի տեղամասի աշխատողներին մտահոգում էր այն հարցը, թե ի՞նչ հնարավորություններ ու ռեզերվներ կան տեղում, որոնք կարելի է կյանքի կոչել և հենց այս տարվանից գործողության մեջ դնել գյուղատնտեսության ինտենսիվացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումները։ Այդ հարցը քիչ անհանգստություն չէր պատճառում նաև ագիտատոր Շալունցին։ Եվ ահա նա մի օր մոտենում է տեղամասի ղեկավարներին և ասում.

— Գիտե՞ք ինչ, ես գտնում եմ, որ «Ծռաբլրի սարահարթ» կոչվող դաշտամասը, որը տարիներ շարունակ անմշակ է, անօգտագործելի, կարելի է այն մաքրել քարակույտերից, հարթել զառիթափը և դնել հացահատիկի ցանքի տակ։

Ագիտատորի առաջարկությունն արժանացավ ուշադրության։ Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ իրոք հնարավոր է այդ բանն անել։ Ու չանցած մեկ-երկու օր, այդ դաշտամասում սկսեցին երևալ մարդիկ ու մեքենաներ, ծայր առավ աշխատանքային եռուզեռը։ Մի քանի օր անց, այդ հողակտորը, որը բռնում է 25 հեկտար տարածություն, յուրացվեց, իսկ վերջերս էլ այն հերկվեց և հողը նախապատրաստվեց այս տարվա աշնանացանի համար։ Ագիտատորը ոչ միայն խոսքով, այլև գործով նպաստեց իր կողմից առաջ քաշված հարցի հաջող լուծմանը՝ ակտիվորեն մասնակցելով նոր հողի յուրացման աշխատանքներին։

«Մեծ տափ» կոչվող հողամասը բռնում է 2 հեկտար

տարածություն։ Այն գտնվում է Որոտան գետի ափին։
Ուսումնասիրելով այդ հողամասի յուրացման հնարավո-
րությունը, Շալունցը մտածեց. «Ինչո՞ւ չի կարելի այն-
տեղ հիմնել խաղողի նոր այգի»։ Չէ՞ որ տեղը հարմար է։
Միայն պետք է գետից պոմպի միջոցով ջուրը հանել և
ոռոգել։ Իսկ դա մեծ ծախսերի հետ կապված չէ, բայց
մենք դրանով կընդարձակենք խաղողի այգիները և կըս-
տանանք բավական օգուտ։ Այդ մասին նույնպես նա
տեղյակ պահեց տնտեսության ղեկավարներին, որոնք
հաշվարկումներ կատարելուց հետո եկան այն եզրակա-
ցության, որ ագիտատորն իրավացի է, իրոք քիչ ծախ-
սումներով կարելի է շատ օգուտ ստանալ։

Ագիտատորի առաջնահերթ խնդիրներից մեկը առա-
ջավոր փորձի տարածումն ու արմատավորումն է։ Այդ
բանը լավ գիտե և այդ ուղղությամբ քիչ ուժեր չի նվի-
րաբերում ագիտատոր Շալունցը։ Այսպես, Գորիսի
արտադրական վարչության Քարաշեն գյուղի կոլտնտե-
սության անվանի հովիվ Մուշեղ Մարտիրոսյանը անց-
յալ տարի նախատեսված 2,1 կիլոգրամ բրդի փոխարեն
յուրաքանչյուր ոչխարից ստացավ 4 կիլոգրամ բուրդ,
յուրաքանչյուր 100 մայր ոչխարից աճեցրեց 140 գառ։
Իմանալով այդ մասին, ագիտատորը այցելեց հովվին,
ուսումնասիրեց նրա ուսանելի փորձը և հերթական ագի-
տացիոն զրույցը նվիրեց այդ հարցին։

— Մուշեղ Մարտիրոսյանը,— ասաց ագիտատորը
համագյուղացի հովիվների հետ ունեցած զրույցում,—
նման հաջողությունների է հասել ոչխարների ու գառ-
ների խնամքն ու կերակրումը խելացիորեն կազմակեր-
պելու շնորհիվ։ Նա արոտային շրջանում ոչխարներին
արոտ է տանում դեռևս արևածագից առաջ, այն հաշվով,
որ այդ ժամանակ ոչխարն արդեն մեկ անգամ կուշտ
արածած լինի։ Հետո թողնում, որ հոտը փոքր ինչ հան-
գստանա և նորից արածեցնում մինչև օրը տաքանալը։
Օրվա տաք ժամերին հոտը հանգստացնում է հով տե-
ղերում և կեսօրից հետո կրկին արոտի տանում, իսկ
օրը մթնելուց հետո թողնում, որ ոչխարները արածեն
այնքան, որ իրենք-իրենց շարժվեն դեպի նստելատեղը։

Առաջավոր հովիվը հոտը արոտ տանելուց առաջ
ստուգում է այն, որպեսզի թունավոր խոտ լինելու դեպ-
քում իսկույն մաքրի արոտավայրը։

Մսուրային շրջանում գործը դժվարանում է, որով-
հետև կանաչ խոտ [illegible] չնայած դրան, այս










շրջանում էլ ոչխարի հիմնական կերը հանդիսանում է
արոտավայրում եղած խոտը։ Ահա թե ինչու ձմեռանոց
տեղափոխվելուց անմիջապես հետո արոտները նա բա-
ժանում է առանձին մասերի։ Եթե տեսնում է, որ օրվա
ընթացքում ոչխարները արոտում կուշտ չեն արածել,
երեկոները նրանց անպայման կերակրում է խոտով ու
խտացրած կերով։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պատմում է,
թե ինչպես առաջավոր հովիվը անկորուստ աճեցնում է
գառներին։

— Գառների անկորուստ աճեցման հիմնական պայ-
մանը կաթնային շրջանում նրանց կերակրման ու խը-
նամքի ճիշտ կազմակերպումն է,— ասել է նա։ Մինչև
1,5—2 ամսական դառնալը, նա գառներին կերակրում
է օրական 2 անգամ՝ առավոտյան ու երեկոյան ժամե-
րին, և հետևում է, որ ամեն մի գառ գտնի իր մորը և
կուշտ սնվի։ Այս շրջանում քիչ կաթ ունեցող և զույգ
գառ ծնած ոչխարներին նա տալիս է լրացուցիչ կեր։
18—20 օրական գառներին տալիս է նուրբ խոտ, սովո-
րեցնում ջուր խմել և աղ ուտել։ 1,5—2 ամսական գառ-
ներին արդեն հովիվը հանում է արոտ։ Այդ նպատակի
համար նա արոտը առանձնացնում է դեռ աշնանը, այն
էլ ձմեռանոցին մոտիկ տեղերում։ Արոտի հանելուց հե-
տո գառներին արդեն կերակրում է օրական մեկ անգամ։
Իսկ 5—5,5 ամսականից հետո արդեն լրիվ անջատում է
մորից և դրանց կերակրումն ու խնամքը կազմակերպում
այնպես, ինչպես ոչխարներինը։

Քիչ կարևոր չէ նաև ոչխարների զուգավորումը։ Հո-
վիվը այդ կազմակերպում է այն հաշվով, որ ոչխարնե-
րի ծինը տեղի ունենա նոյեմբերի կեսերից մինչև հուն-
վարի վերջը։ Դրա առավելությունն այն է, որ գառները
ձմռանն արդեն մեծացած լինելով, հեշտությամբ են
դիմանում գարնանային փոփոխական եղանակներին,
նույն տարվա աշնանը խուզվում են և ունենում 38—40
կիլոգրամ քաշ։ Իսկ որպեսզի զուգավորումը հիմնակա-
նում տեղի ունենա հունիսի կեսերից մինչև օգոստոսի
վերջերը, դեռ մայիս ամսից հովիվը նախապատրաստ-
վում է դրան և ոչխարները հասցնում գիրության։ Դրա-
նով պայմաններ է ստեղծում ստերջության վերացման
և բեղմնավորման համար։ Զուգավորումը նա կատարում
է արհեստական սերմնավորման առաջավոր մեթոդով։
Միևնույն ոչխարի սերմնավորումը կազմակերպվում է

2 անգամ՝ նույն օրվա առավոտյան և երեկոյան, այն էլ երկու խոյերի խառը սերմով: Փորձը ցույց է տալիս, որ այդ ձևով սերմնավորելու դեպքում ոչխարների 35—40 տոկոսը զույգ է ծնում: Սերմնավորումն ավարտելուց հետո նա մոտ մեկ ամիս հոտի մեջ պահում է մեկ կամ երկու խոյ՝ պատահաբար չբեղմնավորված ոչխարներին զուգավորելու համար: Այս ձևով գրեթե բացառվում է ստերջությունը: Իսկ վերջին հաշվով դա հիմնականն է հոտի վերարտադրության համար:

— Ահա այն հիմնականն ու կարևորը,— եզրափակում է իր զրույցը ագիտատորը,— որ ես ձեզ ծանոթացրի առաջավոր հովվի փորձի հետ, որն ուսանելի է: Մենք պետք է մեր աշխատանքում հետևենք առաջավոր հովիվ Մ. Մարտիրոսյանի օրինակին:

Վերջերս ագիտատորը ամառանոցում աշխատող կթվոր-անասնապահներին ծանոթացրեց Խնձորեսկ գյուղի կոլտնտեսության կթվոր-անասնապահ Պավել Բո-զունցի փորձին, որը անցյալ տարի Գորիսի արտադրական վարչությունում առաջինն էր, որ մեկ ֆուրաժային կովից ստացավ 2400 կիլոգրամ կաթ, իսկ այս տարվա անցած 8 ամիսներին կատարեց տարեկան առաջադրանքը:

Ագիտատորն ունկնդիրների հետ խոսում է համոզիչ, մատչելի, պարզ լեզվով: Զրույցի թեման կապում է կոնկրետ արտադրության առջև դրված խնդիրների հետ: Ահա թե ինչու նա միշտ իր զրույցների ընթացքում նշում է, թե նրանցից ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը: Օրինակ, իմանալով, որ բանվորներ Բ. Բախշյանը, Հ. Փարսյանը, Ա. Պետրոսյանը և ուրիշներ չեն կատարել առաջին եռամսյակի իրենց պլանները, ագիտատորը որոշեց լինել նրանց մոտ, օգնել նրանց: Ընկերական օգնության շնորհիվ երկրորդ եռամսյակում ետ մնացողները հասան առաջավորներին, կատարեցին իրենց խնամքին հանձնված կովերի կաթնատվության կիսամյակի առաջադրանքները:

Այսպիսին է նաև Գորիսի արտադրական վարչության Շինուհայրի սովխոզի Հալիձորի տեղամասի ագիտատոր, ուսուցիչ Ա. Շալունցը, որը երկար տարիներ բարեխղճորեն կատարում է պարտիական կազմակերպության հանձնարարությունը, վայելում գյուղի մարդկանց սերն ու համակրանքը:

Ռ. ՏՈՐԲԵԼՅԱՆ

Ա Գ Ի Տ Ա Տ Ո Ր Ի

# ԱՆՁՆԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԸ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Հայկ Սարգսյանն արդեն տարեց հորատող է, բայց այս անգամ նա նորեկի նման էր կանգնել հանքի պետի առանձնասենյակում. անհանգիստ շարժումներ անում, ուզում էր ինչ-որ բան ասել:

— Դե, Հայկ, բարեխղճորե՞ն կաշխատես, թե՞...

— Իհարկե, բարեխղճորեն, ընկեր պետ: Դրա համար էլ վերադարձել եմ աշխատանքի: Հիմա հասկացել եմ, որ այն ժամանակ սխալվեցի... երբ հանքից հեռացա: Միայն թե...

— Դե, լավ է, որ հասկացել ես: Վաղը կարող ես աշխատանքի մեկնել երկրորդ տեղամաս:

— Միայն մի խնդրանք ունեմ,— կցկտուր ասաց հորատողը,— ուղարկեք ինձ Հովհաննես Մեծատուրյանի մոտ:

— Լավ: Տեսնենք կհամաձայնվի՞ Հովհաննեսը, մանավանդ, որ հիմա նա հորատող ունի:

Երբ Հայկ Սարգսյանի ետևից ծածկվեց դուռը, ներկաներից մեկն ասաց.

— Իհարկե, Հովհաննեսի հետ նրա գործերը ստացվում են, որովհետև Հովհաննեսը հսկայի նման է աշխատում, իսկ Հայկը՝ նստում: Եվ պլանն ու աշխատավարձը հավասար կիսում են:

Այո, Հովհաննես Մեծատուրյանի՝ Ալավերդու Շամլուղի հանքերի լավագույն հանքագործ-ագիտատորի հետ Հայկի աշխատանքը դյուրին էր: Դա այսպես պատահեց:

Այն բանից հետո, երբ Հայկ Սարգսյանը շրջեց հանքերի բոլոր տեղամասերը և չկարողացավ ոչ մի բրիգադում կարգին աշխատել ու ամեն բրիգադում որպես կանոն մեկ ամսից ավելի չէր մնում, մի անգամ բախտը բերեց՝ հանքախորշում նա հանդիպեց Մեծատուրյանին:

... Հովհաննես Մեծատուրյանը լռությամբ համաձայնեց պետի առաջարկին: Հայտնի չէ, թե ինչ էր մտածում նա ծույլ ու աշխատանքից խուսափող Հայկի մասին, բայց, այնուամենայնիվ, ոչ առարկեց, ոչ վիճեց, ինչպես սովորաբար պատահում էր դա, երբ Սարգսյանին ուրիշ բրիգադներում էին տեղավորում:

Հանքախորշում Մեծատուրյանը առավոտյան հանդիպելով նոր հորատողին, ողջունելով շշնջաց.

— Ես քո մասին, Հայկ, վատ բաներ շատ եմ լսել: Արի այսուհետև խղճով աշխատենք...

— Դե, ես մեղավոր չեմ, այդ բոլորը կեղծիք է: Իսկ առաջադրանքներս չէի կատարում, որովհետև պատճառներ կային:

— Մեզ մոտ էլ պատճառներ կլինեն: Միայն թե մենք դրանք կվերացնենք, ոչ թե կվկայակոչենք ինքնարդարացման համար,— ընդհատեց Հայկին բրիգադիրը: Եվ զգալ տալով, որ ժամանակն է խոսակցությունն ավարտելու, թեթևակի ոլորեց հանքաբեռնիչ մեքենայի բանակը:

Եվ այդպես Հայկ Սարգսյանի կյանքում նոր էջ սկսվեց: Այդ օրը նա աշխատեց համբողջ ջանասիրությամբ. ուզում էր ցույց տալ իր ընդունակություններն ու անխոնջ ուժը, որ ինքը ամենևին էլ այնպիսին չէ, ինչ նրա մասին ասում են հանքում:

Իսկ երբ մի անգամ դադարեց հորանցքում օդի մատակարարումը, Հայկը թեթևացած շունչ քաշեց ու ասաց.

— Ահա, տեսնում ես, փորձիր այստեղ աշխատել ինչպես հարկն է: Հանքախորշում անպայման մի բան պետք է պատահի հերթափոխի ընթացքում:

Օդին սպասելիս մի տասը րոպե նստեցին: Սարգսյանը վեր կացավ, պատրաստվելով գնալ:

— Գնանք, Հովհաննես ջան, իմ դառը փորձից գիտեմ, որ պարապուրդն արդեն ապահովված է: Դրույքի երկու երրորդը մի կերպ կստանանք:

— Ես էլ գիտեմ այդ: Եթե մենք ինքներս հիմա չգնանք ու չօգնենք փականագործներին, ապա մինչև հերթափոխի վերջը այդպես էլ չի լինի օդը: Գնանք, իմանանք, բանն ինչումն է:

Անբավականությամբ քթի տակ ինչ-որ բան մրմնջալով՝ Հայկը հետևեց իր նոր «շեֆին»: Իսկ հետո սկսեց օգնել փականագործներին՝ տեղում փոխելու վնասված օդամղիչ խողովակը: Տասը րոպեից հետո հանքախորշում հնչեց պերֆորատորի գնդացրային ճարճատյունի ահռելի արձագանքը:

Անցավ առաջին ամիսը, երկրորդը... Եվ ահա հանքախորշի լավագույն հանքագործ Հովհաննես Մեծատուրյանի անվան կողքին սկսեցին հիշատակել նաև հորատող Սարգսյանի անունը: Հայկը, որ նախկինում ընտելացել էր պարապուրդներին, այժմ արդեն սկսել էր գրեթե կրկնակի վաստակել: Կարճատև հանգստի պահերին, հանքախորշից տանող ճանապարհին ագիտատոր Մեծատուրյանը հաճախ, ասես հերթափոխի աշխատանքը հանրագումարի բերելով, անկեղծորեն խոսակցություն էր սկսում.

— Ահա, դու, Հայկ, ասում ես, թե առաջադրանքներն ավելացրել են: Այո, առաջադրանքները հիմա ավելի են: Բայց սխր հիմա աշխատանքը հեշտացել է: Եվ այս մեքենաներով կարելի է անել մի քանի անգամ ավելի շատ բան, քան ձեռքերով: Հիշու՞մ ես, որ երկու տարի առաջ վագոնիկները բեռնում ու բեռնաթափում էինք ձեռքով: Իսկ հիմա հանքաբեռնիչներ ու էլեկտրաքարշեր կան յուրաքանչյուր հանքախորշում:

— Համաձայնվում եմ, ագիտացիադ ազդեց,— ժպտալով ասաց Հայկը: Իսկ հետո արդեն լրջությամբ ասաց. Հետաքրքիր ու հեշտ է քեզ հետ աշխատելը, Հովհաննես: Բացի այդ, միշտ համոզված եմ լինում, որ արդյունքը գոհացուցիչ կլինի:

Արդեն տարուց ավելի է, ինչ Հայկ Սարգսյանն ու ագիտատոր Հովհաննես Մեծատուրյանը աշխատում են միասին: Հանքախորշը այդ ժամանակվա ընթացքում հարյուրավոր մետրերով առաջ է անցել: Անհաջողությունն ու ուրախությունը, վաստակն ու լեռնագործի փառքը նրանք այժմ երկուսով են կիսում: Բայց ոչ միայն հանքախորշում կարելի է տեսնել Հայկին ու Հովհաննեսին միասին: Վերջերս նրանք միասին տանիքում անտենա էին ամրացնում: Հայկը հեռուստացույցը գնել էր ընկերոջ խորհրդով, յուրաքանչյուր ամիս փող տնտեսելով: Մինչդեռ նախկինում նա վաստակած փողը խմիչքի վրա էր վատնում:

Հանքում գոհ են մեր երկու հանքագործների աշխատանքից: Մեծ ընտանիքում Հայկին չեն ջոկում և նա էլ իր հերթին շատ երախտապարտ է զգում Հովհաննեսի հանդեպ: Իսկ Հովհաննես Մեծատուրյանը հպարտ է իրենցով՝ երկուսով:

Միայն թե անիրավացի էր այն մարդը, որ ասաց, թե Հայկը, իբր, Հովհաննեսի վզին է բեռնում գործը: Ոչ: Հովհաննեսին ամենևին էլ հարկ չի լինում Հայկի փոխարեն աշխատելու: Հորատողը և ուժ ունի, և լեռնագործի հմտություն: Իսկ այժմ, բացի այդ, նա զգաց, թե ինչպես են իսկական ապրում:

Օրինակի ուժով, բարի խոսքով ագիտատոր Մեծատուրյանը մարդուն ճիշտ ճանապարհի վրա բերեց, մարդուն, որն ապրում ու աշխատում է իր կողքին:

Ա. ՏԵՐՅԱՆ

# ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՓԱՌԱՊԱՆԾ ՏՈՆԸ

## (Թվեր և փաստեր)

Մոտենում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձի օրը: Ի պատիվ մեծ Հոկտեմբերի մեր ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորները լայն թափով ծավալել են սոցիալիստական մրցություն և եռանդով պայքարում են հասնել նորանոր նվաճումների: Ահա տեղեկություններ այդ մասին:

★ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում հաջողությամբ փորձարկվեցին կաուստիկ սոդայի շոգեմշակման նոր արտադրամասի ագրեգատները: Այս հնարավորություն է տալիս կրկնապատկել կաուստիկ սոդայի արտադրությունը:

★ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի 19-րդ արտադրամասի կոլեկտիվը կատարելագործել է երկու տեսակ գեներատորների հավաքման պրոցեսը: Երկիրն արդեն ստացել է 100 կիլովատանոց 8.000 հերց հաճախականության և 100 կիլովատանոց 2.400 հերց հաճախականության փոխարկիչ գեներատորներ:

★ Երևանի ավտոդողերի գործարանի կոլեկտիվը սկսեց ավտոբեռնիչների դողերի արտադրության յուրացումը: Տարեկան կթողարկվի մի քանի հազար այդպիսի դող:

★ Անցած ամիսներին Երևանի պահածոների գործարանը լրացուցիչ արտադրել է ավելի քան երկու միլիոն պայմանական տուփ պահածո: Գործարանի կոլեկտիվը աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 18 տոկոսով և արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցումից ստացել 11 հազար ռուբլու օգուտ:

★ Լուսավանի երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի մի շարք առաջավոր էլեկտրազոդողներ իրենց ամենօրյա առաջադրանքները կատարում են 125—130 տոկոսով, իսկ Ներտաշ հաստոցների գործարանի շատ հղկող բանվորներ օրական կատարում են մեկուկես արտադրական նորմա:

★ Կիրովականի շինտրեստի կոլեկտիվը պարտավորվել է նոյեմբերին ավարտել հանքային պարարտանյութերի արտադրամասի ընդլայնման շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը և մինչև տարվա վերջը պլանից ավելի կատարել 300 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք:

★ Երևանի էլեկտրասարքերի գործարանի կոլեկտիվը լրացուցիչ թողարկել է 2.000 ռուբլու արտապլանային էլեկտրասարքեր: Գործարանի նորարարները տվել են 124 ռացիոնալիզատորական առաջարկ, որի մի մասի ներդրումից գործարանը ստացել է 53,3 հազար ռուբլու պայմանական օգուտ:



★ Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանի կոլեկտիվը այս տարվա անցած ամիսներին արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ տնտեսել է ավելի քան 10 հազար ռուբլի:

★ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոմերիտականներն ու երիտասարդները անցած ամիսներին խնայել են շուրջ 400 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Գործարանի երիտասարդ նորարարները այս տարի կատարել են 150 ռացիոնալիզատորական առաջարկություն, որի ներդրումից ստացվել է հազարավոր ռուբլիների օգուտ:

★ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի 385 նորարարների կատարած ռացիոնալիզատորական առաջարկություններից արտադրության մեջ ներդրվել է 322-ը, որը կոմբինատին տալիս է տարեկան 275 հազար ռուբլու պայմանական օգուտ:

★ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի 7-րդ ցեխի մի շարք բանվորներ՝ Խանբեկ Հակոբյանը, Աբաքսյա Քալանթարյանը և ուրիշներ արդեն աշխատում են 1965 թվականի հաշվին:

★ Կիրովականի մետաքսաթելագործները ի պատիվ մեծ Հոկտեմբերի, պայքարում են 400 տոննա արտապլանային արտադրանք թողարկելու համար:

★ Արտաշատի արտադրական վարչության Աբովյան և Յամանջալու գյուղերի կոլտնտեսություններն արդեն կատարել են բրդի վաճառքի տարեկան առաջադրանքները:

★ Ալավերդու արտադրական վարչության Ուզունլարի սովխոզը մթերակայան է ուղարկել նախատեսվածից 4 անգամ շատ՝ 7.680 ցենտներ հացահատիկ:

★ Էջմիածնի արտադրական վարչության 17 կոլտնտեսություններ պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար: Այժմ այդ բարձր կոչմանն են արժանացել Ներքին Ջարբախի կոլտնտեսությունը և 32 բրիգադներ, ֆերմաներ ու օղակներ:

★ Սպիտակի արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանը արդեն վաճառել են 21.135 ցենտներ բարձրորակ հացահատիկ:

★ Աշտարակի արտադրական վարչության մի շարք կոլտնտեսություններ ժամկետից շուտ կատարեցին կաթի վաճառքի տարեկան պլանները:

★ Ապարանի արտադրական վարչության Երնջատափ գյուղի կոլտնտեսության անվանի կոմբայնավար Ղարիբ Մելիքյանը վեց աշխատանքային օրում հնձելով 90 հեկտար հացահատիկ, յուրաքանչյուր հեկտարից տվեց 18—20 ցենտներ բերք:

★ Ժամկետից շուտ՝ սեպտեմբերի 10-ին Իջևանի արտադրական վարչության Սարիգյուղ և Ջողազ գյուղերի կոլտնտեսությունները կատարեցին կաթի վաճառքի տարեկան պլանը:

★ 115 հեկտարի վրա կարտոֆիլի առատ բերք են աճեցրել Շամշադինի արտադրական վարչության Ղրղի գյուղի կոլտնտեսության աշխատավորները: Նախատեսված 135-ի փոխարեն հեկտարից հավաքվել է մոտ 300 ցենտներ կարտոֆիլ:

★ Էջմիածնի արտադրական վարչության Ֆրանգանոցի կոլտնտեսության աշխատավորները հաջողությամբ կատարեցին բամբակենու պլանտացիաների մշակման աշխատանքները: Նրանք պարտավորվել են պլանով նախատեսված 22 ցենտների փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստանալ 35 ցենտներ բամբակ:

★ Բասարգեչարի արտադրական վարչության Զոդ գյուղի կոլտնտեսությունը գերակատարել է պետությանը հացահատիկ վաճառելու պլանը: Մթերակայան է հանձնված 27.200 փութ հացահատիկ:

★ Հացահատիկի առատ բերք են հավաքում Կրասնոսելսկի արտադրական վարչության Ճամբարակի սովխոզի կոմբայնավարները, որոնցից Ս. Ստեփանյանը 8 օրվա ընթացքում պահեստ է ուղարկել 570 ցենտներ հացահատիկ:

★ Սիսիանի արտադրական վարչության Բռնակոթի կոլտնտեսությունը պետությանը պլանով նախատեսված 2.600-ի դիմաց վաճառել է 2.840 ցենտներ հացահատիկ, իսկ Սիսիանի սովխոզը՝ 6.683 ցենտներ՝ 1.133 ցենտներով գերակատարելով պլանը:

★ Անիի արտադրական վարչության Հայրենյաց գյուղի կոլտնտեսությունն արդեն գերակատարել է պետությանը կաթի վաճառքի պլանը: Շուտով կոլտնտեսությունը կկատարի նաև մսի և բրդի վաճառքի տարեկան պլանները:

★ Մարտունու արտադրական վարչության Ծովագյուղի և Լիճքի սովխոզները կատարել են ծխախոտի տերևաքաղի տարեկան առաջադրանքը:

★ Ալավերդու արտադրական վարչության Շնողի սովխոզը անցած ամիսներին արտադրել է 380 հազար ձու: Սովխոզի աշխատավորները պայքարում են տարեկան պլանից ավելի արտադրել 2.500 ձու

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջանք չեն խնայում, որպեսզի անշեղորեն կենսագործեն ՍՄԿԿ XXII համագումարի որոշումները:

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՕԳՆԱԿԱՆՆ ՈՒ ՀՈՒՍԱԼԻ ՌԵԶԵՐՎԸ

(ՀամԼԿԵՄ 46-ամյակի առթիվ)

Յուրաքանչյուր տարի հոկտեմբերի 29-ին սովետական երիտասարդությունը, մեր ժողովուրդը հանդիսավոր կերպով նշում են լենինյան կոմերիտմիության ծննդյան օրը:

Ծնունդ առնելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի և քաղաքացիական կռիվների բոցերի մեջ, կոմերիտմիությունը զինվորագրվել է կոմունիստական պարտիայի աշխարհաշեն գաղափարների իրականացմանը, մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցմանը: Կոմերիտմիության պատմությունը, նրա փառապանծ տարեգրությունը անքակտելիորեն կապված են կոմունիստական պարտիայի, մեծ Լենինի անվան հետ:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո ամբողջ երկրով մեկ ստեղծվեցին երիտասարդական միություններ, որոնք տեղական պարտիական կազմակերպությունների հետ միասին մեծ աշխատանք էին կատարում սովետական նորաստեղծ պետության ամրապնդման և օտարերկրյա ինտերվենցիայից պաշտպանության գործում:

1918 թվականի հոկտեմբերի 29-ին Մոսկվայում բացվեց բանվորական և գյուղացիական երիտասարդական միությունների առաջին համառուսաստանյան համագումարը, որը հիմնադրեց Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության միությունը (ՌԿԵՄ, իսկ 1924 թվականից՝ ՌԼԿԵՄ, 1926 թվականից՝ ՀամԼԿԵՄ):

«Կոմերիտմիության կազմավորումը,— գրել է Մ. Ի. Կալինինը,— ըստ էության մի նոր, առաջընթաց քայլ էր մեր երկրում սոցիալիզմի կառուցման ճանապարհին... Կոմերիտմիությունը բանվորա-գյուղացիական երիտասարդությանը համախմբեց մի ամբողջության մեջ և ամուր կապերով կապեց նրան կոմունիստական պարտիայի հետ»:

Կոմերիտմիության պատմության մեջ անգնահատելի նշանակություն ունեցավ կոմերիտմիության 3-րդ համագումարում Վ. Ի. Լենինի արտասանած ճառը, որտեղ մեծ առաջնորդը բնորոշեց կոմերիտմիության տեղն ու

դերը սովետական հասարակության պատմության մեջ, բացահայտեց նրա նպատակներն ու խնդիրները, աշխատանքի բովանդակությունն ու մեթոդները:

Կոմունիստական երիտասարդական կազմակերպությունը աճեց, ամրապնդվեց և դարձավ հզոր բանակ. 1918 թվականին 22 հազար 100 անդամներից լենինյան կոմերիտմիությունը 46 տարիների ընթացքում հասավ ավելի քան 21 միլիոնանոց հզոր բանակի: Միայն անցյալ տարի ՀամԼԿԵՄ շարքերն են ընդունվել մոտ 4 միլիոն պատանիներ ու աղջիկներ:

Լենինյան կոմերիտմիությունը մեծ և պանծալի գործեր կատարեց նաև Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում: Տասնյակ հազարավոր սովետական պատանիներ ու աղջիկներ, մասնակցելով մեր հայրենիքի պատվի, ազատության և անկախության համար մղված համաժողովրդական պայքարին, հանդես բերեցին մեծ արիություն ու հաստատակամություն, սովետական հայրենիքի նկատմամբ ցույց տվեցին անխախտ հավատարմություն:

Պատերազմի տարիներին 3 միլիոն 500 կոմերիտականներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, 7 հազար կոմերիտականի շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում, ավելի քան 50 հազար պարտիզան ու պարտիզանուհի պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, որոնցից 99-ը արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման: Սովետական Միության հերոսի կոչման արժանացած հայ ռազմիկներից 65-ը Հայաստանի կոմերիտմիության սաներն էին:

Վերջին տասնամյակը ՀամԼԿԵՄ պատմության մեջ հատուկ տեղ է գրավում: Այդ ժամանակաշրջանում կոմերիտմիությունը զգալիորեն բարելավեց իր աշխատանքը, աճեց նրա դերը կուլտուր-տնտեսական շինարարության, հասարակական-քաղաքական կյանքում: Այդ բոլոր փոփոխությունների վճռական գործոնը հանդիսացան ՍՄԿՊ XX և XXII համագումարների, պարտիայի Կենտկոմի պլենումների պատմական որոշումները, պարտիական և պետական կյանքում լենինյան նորմաների վերականգնումը:

Սովետական երիտասարդությունը, լենինյան կոմերիտմիությունը միշտ և ամենուրեք ամենաակտիվ մասնակցություն է ունեցել արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, արվեստի, գիտության և



տեխնիկայի զարգացման բնագավառում: Արդյունաբերության, շինարարության բանվորներից 5,5 միլիոնը կազմում են ՀամԼԿԵՄ անդամները: Ավելի քան 3 միլիոն կոմերիտականներ աշխատում են կոլտնտեսային և սովխոզային դաշտերում ու ֆերմաներում, 375 հազար կոմերիտականներ ունեն ինժեների դիպլոմ, 121 հազարը՝ գյուղատնտեսության մասնագետի կոչում: Մանկավարժության ֆրոնտում աշխատող կոմերիտականների թիվը կազմում է 431 հազար: Դա սովետական երիտասարդության նկատմամբ կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության պերճախոս վկայությունն է:

Վերջին տասնամյակում ավելի քան 2,6 միլիոն կոմերիտականներ ընդունվել են կոմունիստական պարտիայի շարքերը: Սովետական երիտասարդները, կոմերիտականները ակտիվորեն մասնակցում են մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքին: 1962 թվականին ՍՍՌՄ Գերագույն սովետի կազմում ընտրվել է մինչև 30 տարեկան 209 մարդ:

Սովետական երիտասարդությունը մշտապես պատվով է կատարել պարտիայի, սովետական ժողովրդի հանձնարարությունները: Վերջին տարիներին ավելի քան 1,5 միլիոն երիտասարդներ կոմերիտմիության ուղեգրով պարտիայի հանձնարարությամբ մեկնեցին շինարարական նոր օբյեկտներում մշտական աշխատանքի, որից 600 հազարը՝ Սիբիր և Հեռավոր Արևելք: Երիտասարդության և կոմերիտականների ձեռքերով են կառուցվել բազմաթիվ գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ և այլ կարևորագույն օբյեկտներ: 700 հազար երիտասարդ հայրենասերներ մասնակցեցին խամ ու խոպան հողերի մշակման հայրենանվեր գործին: Միայն այս տարի քիմիական և ցելյուլոզային արդյունաբերության 94 կառույցներ հայտարարվել են համամիութենական հարվածային կոմերիտական կառույցներ:

Այս փառավոր գործերում իր արժանի ներդրումն ունի նաև ՀամԼԿԵՄ մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը: Ռեսպուբլիկայի 210 հազարանոց կոմերիտմիությունը իր բազմաթիվ նախաձեռնություններով դարձել է ՀամԼԿԵՄ ճանաչված և առաջավոր ջոկատներից մեկը: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության դաշտերում աշխատող երի-

...տասարդներն ու կոմերիտականները եղան «Հարուստ հեկտարի համար» շարժման նախաձեռնողները, որը վաղուց դուրս է եկել միութենական մրցասպարեզ: Չնայած կարճ ժամանակամիջոցին, «Հարուստ հեկտարի» և «Հարուստ ֆերմայի» շարժման համար արդեն պայքարում են 1.440 երիտասարդական օղակներ և բրիգադներ:

Ռեսպուբլիկայում մեխանիզատորական համընդհանուր դասընթացներում սովորել և ավարտել են շուրջ 10.000 կոմերիտականներ ու երիտասարդներ:

Ռեսպուբլիկայում գնալով ծավալվում է կոմունիստական աշխատանքի շարժումը: Ներկայումս ռեսպուբլիկայում կան կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած և այդ կոչման համար պայքարող շուրջ 1.800 բրիգադներ, հերթափոխություններ, բաժանմունքներ և տեղամասեր:

Կոմերիտմիությունն ավելի ակտիվ մասնակցություն է ցուցաբերում սարքավորումների մոդեռնացման, ավտոմատացման և մեխանիզացման, բանվորների որակավորման բարձրացման ուղղությամբ: Կոմերիտական կազմակերպությունը ստանձնել է մեծ քիմիայի շեֆությունը: Համարձակորեն կարելի է ասել, որ նա պատվով է կատարում այդ գործը: Դրա վառ ապացույցն է համամիութենական կոմերիտական հարվածային կառույց «Պոլիվինիլացետատ» գործարանի մի շարք ցեխերի ժամանակին շահագործման հանձնելը և Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատում ծավալվող այն բուռն աշխատանքը, որին ձեռնամուխ են եղել հարյուրավոր կոմերիտականներ ու երիտասարդներ:

Անցյալ տարի և այս տարվա անցած ամիսներին ռեսպուբլիկայի երիտասարդ ռացիոնալիզատորների կողմից արված շուրջ 9.200 առաջարկություններից արտադրության մեջ ներդրվել է 7.200-ը, որից ստացված օգուտը կազմում է 5 միլիոն 200 հազար ռուբլի:

Կոմերիտմիությունը զգալի աշխատանք է կատարում պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակության գործում: Այսօր կոմերիտմիության գործունեության նպատակն է դարձել մոբիլիզացնել երիտասարդության ուժերը ՍՄԿԿ XXII համագումարի որոշումները, պարտիայի ծրագիրը կենսագործելու, մեր երկրում կոմունիստական հասարակարգ կառուցելու համար:

Ա. ԲԱՐՍԵՂՅԱՆ
ՀԼԿԵՄ Կենտկոմի հրահանգիչ



# ԲՈՒՆԴԵՍՎԵՐԸ ՆՈՐԻՑ Է ԱՐՇԱՎՈՒՄ...

## Արևմտագերմանական ռևանշիստները խաղաղության սպառնալիք են

Վերջերս մեկնաբան Մայրոն Քենդելը «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթում գրել է. «Մի քանի ամիս առաջ արևմտագերմանական մի ընկերություն արձակեց չորս հրթիռ, որոնք աշխարհում առաջացրին իրենց պայթյունի ուժից շատ ավելի մեծ ցնցում: Սարսուռ անցավ շատ մարդկանց մարմնով, որոնք հիշում են, որ այս հարյուրամյակում աշխարհը երկու անգամ իր կաշվի վրա զգացել է գերմանական պատերազմական մեքենայի հզորությունը: Ըստ որում երկրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստման ժամանակ Գերմանիայի ռազմական մեքենան և գերմանական ռազմական արդյունաբերությունը... վերականգնվեցին գաղտնի՝ ի խախտումն միջազգային համաձայնագրերի»:

Չի կարելի չունկնդրել ամերիկյան ժուռնալիստի այս զգաստ ձայնը: Իսկապես, միլիոնավոր մարդիկ դեռ չեն մոռացել մարդկության պատմության մեջ ամենաարյունահեղ երկրորդ համաշխարհային պատերազմը, որն իր հետ տարավ ավելի քան հիսուն միլիոն մարդկային կյանք: Ինչպես հայտնի է, պատերազմն ամայացրեց շատ երկրներ, ավերեց և այրեց հազարավոր քաղաքներ ու գյուղեր, ոչնչացրեց մի քանի սերունդների աշխատանքի արդյունքները: Եվ ահա այժմ ֆաշիզմի ջախջախումից տասնինը տարի հետո, արևմտագերմանական ռևանշիստները նորից զենք են շաչեցնում, աշխարհին սպառնում են նոր պատերազմով:

Ճիշտ է, «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը, այդքան պատկերավոր նկարագրելով արևմտագերմանական ռևանշիստների լկտի գործողությունները, հասկանալի պատճառներով ոչինչ չի ասել այն մարդկանց մասին, ովքեր ոգեշնչում են ռևանշիստների պատերազմական ավանտյուրաները: Ամբողջ աշխարհին հայտնի է, որ Բոննի պատճառով Եվրոպայում ստեղծ-

ված այժմյան լարվածությունը հնարավոր է դարձել նրա նկատմամբ արևմտյան խոշոր տերությունների, և առաջին հերթին Ամերիկայի Միացյալ Նահանգների վարած քաղաքականության պատճառով։ Նրանց օգնությամբ ԳՖՌ-ում ռևանշիստական նպատակների իրականացման համար ստեղծվել է ռազմատնտեսական ավելի հզոր բազա, քան գոյություն ուներ նացիզմի տիրապետության ժամանակ։ Հիտլերը երկրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստման համար ծախսեց 90 միլիարդ մարկ, իսկ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի ռազմական ծախսերն արդեն հասել են 150 միլիարդ մարկի։

Այս ամենը ցույց է տալիս, որ Անգլիան, Ֆրանսիան և ԱՄՆ-ը կոպիտ կերպով խախտել են Պոտսդամի համաձայնագրերը, որոնցով նախատեսված է ապառազմականացնել ամբողջ Գերմանիան, դեմոկրատացնել նրա կյանքը։ Մինչդեռ, ինչպես հայտնի է, իմպերիալիզմից ու միլիտարիզմից ազատվել է միայն Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան։

Արևմտյան Գերմանիայում այժմ, ինչպես և հիտլերիզմի ժամանակ, երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում բոլոր գործերը տնօրինում է խոշոր մոնոպոլիստական միավորումների մի փոքր խումբ։ Առաջվա պես երկրի տերերն են «Ի. Գ. Ֆարբենինդուստրիայի», Կրուպպի, Ֆլիկի, Սիմենսի, Տիսենի և ուրիշ կոնցեռնների, բանկերի, ֆինանսական և արդյունաբերական մագնատները։ Նրանք իր ժամանակին սնուցել են Հիտլերին ու նրա ավազակախմբին, իսկ այժմ սնուցում են ռևանշիստներին։

Իրենց ձեռքում պահելով ԳՖՌ-ի էկոնոմիկայի հանգուցային դիրքերը, մոնոպոլիստական պարագլուխները որոշում են Բոննի պետության ամբողջ ներքին և արտաքին քաղաքականությունը, այն տանում դեպի նեոնացիզմի և ռևանշիզմի ուղին։ Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրներից հենց ԳՖՌ-ն է հանդես գալիս որպես ամենաավանտյուրիստական և ամենաագրեսիվ պետություն։ Այստեղ բացահայտորեն լսվում են դեպի Արևելք նոր խաչակրաց արշավանքի կոչեր, պատերազմի ուժեղ նախապատրաս-



տություն է տեսնվում սոցիալիստական լագերի երկրների դեմ։

Այս կապակցությամբ կասկած է առաջացնում չէին պառակտիչների դիրքը, որոնք քողարկում են Բոննի քաղաքականության ագրեսիվ էությունը։ Հայտնի է, որ նրանք առաջ են քաշել այսպես կոչված «միջանկյալ գոտու» տեսությունը, որն Արևմտյան Գերմանիան, Անգլիան, Ֆրանսիան ու Ճապոնիան դիտում է որպես ամերիկյան իմպերիալիզմի լծի տակ գտնվող պետություններ։ Դրանով իսկ,— ընդգծել է Մ. Ա. Սուսլովը ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում իր զեկուցման մեջ,— գունազարդվում են վերոհիշյալ երկրների, հատկապես ԳՖՌ-ի իմպերիալիստները, որոնք վտանգ են սոցիալիստական երկրների ժողովուրդների, ազգային-ազատագրական շարժման, ընդհանուր խաղաղության համար։ Արևմտագերմանական իմպերիալիզմն այժմ արդեն բնավ ԱՄՆ-ի իմպերիալիզմի հասարակ սատելիտը չէ։ Հենվելով իրենց հզոր տնտեսական պոտենցիալի վրա, որն զգալիորեն գերազանցում է ամբողջ հիտլերյան Գերմանիայի պոտենցիալը, ԳՖՌ-ի մոնոպոլիստներն ստեղծել են խոշոր ռազմական ուժ և ավելի ու ավելի են տոն տալիս ՆԱՏՕ-ում։

Բունդեսվերի խոշոր միավորումների ստեղծումից հետո սկսվեց դրանց զինումը գործողության տարբեր շառավիղների հրթիռներով։ 1961 թվականից սկսած արևմտագերմանական ցամաքային ուժերն ստանում են «Օնեստ Ջոն» տիպի չկառավարվող ռեակտիվ արկեր։ ԳՖՌ-ն Ամերիկայի Միացյալ Նահանգներից գնել և այժմ էլ գնում է «Սերջենտ» և «Պերշինգ» տիպի հրթիռներ, որոնք կարող են կրել մեծ էկվիվալենտի տրոտիլ պարունակող միջուկային մարտագլխիկներ։

Արևմտագերմանական ռևանշիստների ախորժակը մեծանում է օրստօրե։ Նրանք հաստատակամորեն շարունակում են որոնել ատոմային զենքի գործածության անմիջականորեն մասնակցելու ուղիներ և պայքարում են իրենց բանակը միջուկային մարտագլխիկներով օժտված ստրատեգիական հրթիռներով զինելու համար։ 1963 թվականի նոյեմբերի 27-ին հանդես գալով բունդեսվերի ակադեմիայում, բունդեստագի պաշտպանության հարցերի հանձնաժողովի նախագահ





նգերը պահանջեց, որ Միացյալ Նահանգները հրաժար-
վեն միջուկային զենքի նկատմամբ վերահսկողության
մենաշնորհից և Արևմտյան Գերմանիային իրավունք
տան մասնակցելու այդ զենքի պլանավորմանն ու կի-
րառմանը:

Վերջերս արևմտագերմանական բանակի հրամա-
նատար նշանակվեց Հայնց Տրետները, որը քսան տարի
ծառայել է ֆաշիստական ռայխսվերում և վերմախ-
տում: Հանդիսանալով օդային-դեսանտային 4-րդ
դիվիզիայի հրամանատարը, որը գործել է Իտալիայի
Ֆլորենցիայի նահանգում, նա ծանր հանցանքներ է
կատարել: Տրետների հրամանով Ֆլորենցիա քաղաքը
բարբարոսաբար ավերվել է: Հետպատերազմյան տարի-
ներին էլ հիտլերյան դահիճը հավատարիմ է մնացել
ֆաշիզմի ոգուն: Տրետների, ինչպես և մաղապուրծ եղած
շատ ուրիշ հիտլերականների ստորագրությունը դրված է
1960 թվականի «գեներալների հանրագրի» տակ, որ-
տեղ ընդգծված է, թե բունդեսվերը «չի կարող հրա-
ժարվել ատոմային զենքից»:

Բոննի պարագլուխները նոր զենքի տիրելու ռեալ
հնարավորությունը տեսնում են «բազմակողմանի մի-
ջուկային ուժերի» ստեղծման ամերիկյան պլանում:
Բանն այն է, որ Արևմտյան Եվրոպայի առաջատար եր-
կրները վերջին տարիներս ոչ միայն սկսել են կապի-
տալիստական համաշխարհային շուկայում դառնալ
ԱՄՆ-ի մրցակիցները, այլև նրա թելադրանքից ազատվե-
լու տենդենցներ են ցուցաբերում: ՆԱՏՕ-ում ԱՄՆ-ի
պարտնյորները Վաշինգտոնից պահանջում են իրենց էլ
ատոմային զենք տալ: Հասկանալով, որ ՆԱՏՕ-ում մի-
ջուկային մոնոպոլիայի վերացման դեպքում Արևմուտ-
քում անխուսափելիորեն կզրկվեն ղեկավար
դերից, Ամերիկայի Միացյալ Նահանգները որոշել են
թույլ չտալ այդ բանը: Պենտագոնը մտադիր է հյու-
սիսատլանտյան բլոկի շրջանակներում ստեղծել «բազ-
մակողմանի միջուկային ուժեր», որպեսզի իրենց դաշ-
նակիցներին հանգստացնեն, ձևացնելով, թե նրանք էլ
«ատոմային պարտնյորներ» են:

Զարմանալի ոչինչ չկա, որ ԳՖՌ-ն առաջիններից
մեկը պաշտպանեց «բազմակողմանի միջուկային ուժեր»
ստեղծելու անգլոամերիկյան նախագիծը: Ինչպես ար-
դարացիորեն նկատել է ամերիկյան ժուռնալիստ Դոն



Կուկը, Բոննի գործիչները համաձայնվում են ամեն մի
պլանի, միայն թե դա իրենց մոտեցնի «ատոմային պա-
հեստներին»: Այդ է պատճառը, որ նույնիսկ հսկայա-
կան ֆինանսական ծախսերը (չէ՞ որ «բազմակողմանի
միջուկային ուժերի» ստեղծման կապակցությամբ Վա-
շինգտոնը ԳՖՌ-ին դրամական հաշիվ է ներկայացրել)
առարկություններ չառաջացրին արևմտագերմանական
ռևանշիստների շրջանում:

Ըստ պենտագոնի մտադրության, «բազմակողմանի
միջուկային ուժերի» հիմքում առայժմ պետք է դրվեն
ոչ թե ատոմային սուզանավերը, այլ «պոլարիսներով»
զինված վերջրյա նավերը: Բոննը կառչեց այդ վարիան-
տից, քանի որ հրթիռակիր սուզանավերի փոխարեն հըր-
թիռակիր վերջրյա նավերի օգտագործումը նրան թույլ
կտա խնայել ժամանակ ու ֆինանսներ և կմոտեցնի
«միջուկային հզորություն ձեռք բերելու» օրը:

Սակայն գերմանական ռևանշիստները դրանով էլ չեն
բավարարվում: Ամեն կերպ մանրելով, նրանք ձգտում
են ստանալ ավելին: Արևմտագերմանական ռազմա-
նտեսական «Վեր ունդ վիրտշաֆտ» ազդեցիկ ժուռ-
նալը 1963 թվականի վերջին կտրականապես հանդես է
եկել ամերիկացիներից բունդեսվերի կախման դեմ:
«Միայն թաչունի ուղեղ ունեցողները կարող են լրջորեն
ընդունել բազմակողմանի միջուկային ուժերի վերաբեր-
յալ առաջարկությունը»,— գրել է նա:

Օգտագործելով ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների
հզորությունը, Բոնն արդեն սկսել է սեփական հրթիռա-
յին զենք արտադրել: Այսպես, «Առսենպոլիտիշե կո-
րեսպոնդենցը» հաղորդել է, որ ավելի քան հիսուն ինս-
տիտուտներ և գիտահետազոտական միավորումներ
ջանում են ավարտել մի ամբողջ շարք տարբեր տիպի
հրթիռների պլանավորման և փորձարկումների փուլը:
Իսկ «Դոյչե ցայթունգ» թերթն այդ ամենն արտահայ-
տեց կոնկրետ լեզվով. «1963 թվականի դեկտեմբերի
5-ին Կուկսաֆենում փորձարկվեցին մի քանի հրթիռ-
ներ՝ գերմանական հողից օդ բարձրացված առաջին
հրթիռները «ֆաու»-ից հետո, որն ավերել է Անգլիայի
քաղաքները»:

Բունդեսվերը նորից արշավի է ելել, նորից է հնչում
նացիստական երգը՝ «Մենք կշարունակենք արշավել, և
թող ամբողջ աշխարհը վերածվի ավերակների»:

Կանոնավոր բանակից բացի, գերմանական միլիտարիստների և ռևանշիստների համար հենարան են հանդիսանում բազմաթիվ «տրադիցիոն» ռազմական միավորումները և զինվորական միությունները, ինչպես նաև տերիտորիալ կազմավորումները: Կղերական-միլիտարիստական ռեժիմով ԳՖՌ-ում ստեղծված սնուցիչ հողի վրա ռևանշիստական կազմակերպություններն ու միությունները աճում են թունավոր սունկերի պես: Եթե 1952 թվականին գոյություն է ունեցել 150 այդպիսի միություն, ապա այժմ դրանց թիվը անցնում է 1500-ից: Նրանք բոլոր երիտասարդներին բթամիտ են դարձնում, դաստիարակելով միլիտարիստական և ռևանշիստական ոգով:

Արևմտյան Գերմանիայում նացիզմի և ռևանշիզմի վերածնման գործում նույնքան ռեակցիոն դեր են կատարում այսպես կոչված «հայրենակցությունները», որոնց թիվը հասնում է մոտ ութսունի: Դրանցից ստեղծվել է մի ընդհանուր կազմակերպություն՝ «վտարանդիների միություն», որի մեջ մտնում են միլիոնավոր վերաբնակիչներ: «Հայրենակցությունները» նացիստական թափթփուկների ղեկավարությամբ ռևանշիստական լկտի պրոպագանդա են մղում բնակչության շրջանում, կազմակերպում են բազմաթիվ պրովոկացիոն խառնաժողովներ, բացահայտորեն կոչ են անում բռնագրավել Լեհաստանի, Չեխոսլովակիայի արևմտյան հողերը, ՍՍՌՄ-ի Կալինինգրադի մարզը և սոցիալիստական լագերի երկրներին պատկանող այլ տերիտորիաներ:

Ռևանշիզմի մոլի ջատագով է նախկին կանցլեր, «Քրիստոնեա-դեմոկրատական միություն» պարտիայի այժմյան նախագահ Ադենաուերը: Նա հանդես է գալիս Բոննի պետության կողմից ԳԴՌ-ն զավթելու օգտին, ամեն կերպ պաշտպանում է «հայրենակցությունների» Լեհաստանի արևմտյան հողերը գրավելու պահանջները: «Ես համոզված եմ,— լկտիորեն հայտարարել է Ադենաուերը վերաբնակիչների հավաքներից մեկում,— որ կգա մեր ցանկությունների կատարման օրը»: Իր նախորդից ետ չի մնում նաև նոր կանցլեր Էրհարդը: Բունդեսվերի ղեկավար կազմի առջև վերջերս արտասանած ճառում նա պահանջել է Բոննի հովանու տակ վերա-



կանգնել Գերմանիան նախապատերազմյան սահմաններով:

Արտահայտելով մոնոպոլիաների և յունկերության շահերը, հենվելով միլիտարիստական, կղերական և ռեվանշիստական ուժերի վրա, ԳՖՌ-ի կառավարող շրջանները վարում են ներքին և արտաքին պրոֆաշիստական քաղաքականություն: Վերջերս Էրհարդի կառավարությունը հրապարակեց 1963 թվականի իր գործունեության վերաբերյալ հաշվետվությունը, որն ասես նոր կառավարության ինքնանկարը, նրա ապագա մտադրությունների վերաբերյալ դեկլարացիա լինի:

«Ինչպես երևում է հաշվետվությունից,— ասված է ՏԱՍՍ-ի 1964 թ. մարտի 8-ի հայտարարության մեջ,— ԳՖՌ-ի նոր կառավարության արտաքին քաղաքական ծրագիրն էական փոփոխությունների չի ենթարկվել: Առաջվա նման նրա կենտրոնում է գտնվում «գերմանական հարցի լուծման», այսինքն, ինչպես վերծանվում է հաշվետվության մեջ, ռայխի վերականգնման և Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի կողմից Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, արևմտյան Բեռլինի և այլ պետությունների պատկանող տերիտորիաների զավթման պահանջը»:

ԳՖՌ-ում տարեցտարի ավելի ու ավելի են բազմանում ռևանշիզմի բացիլները: Եվ չի կարելի երաշխավորել, թե այդպիսի մթնոլորտում երևան չի գա մի նոր Հիտլեր, որը նորից կփորձի իրականացնել աշխարհին տիրելու զառանցական «գաղափարները»:

Այդ է պատճառը, որ պրոգրեսիվ մարդկությունը և հատկապես սովետական մարդիկ, որոնք իրենց ուսերի վրա կրել են հիտլերիզմի կողմից սանձազերծված երկրորդ համաշխարհային պատերազմի հիմնական ծանրությունը, տագնապով են հետևում գերմանական միլիտարիստների ագրեսիվ ձգտումներին: Ժողովուրդները վճռականապես դատապարտում են Բոննի այժմյան կառավարողների նեոֆաշիստական քաղաքականությունը, պահանջում են սանձահարել ռևանշիստներին, վերացնել երկրորդ համաշխարհային պատերազմի մնացորդները, Գերմանիայի հետ կնքել հաշտության պայմանագիր:

Կ. ԿՈՆԴՐԱՏՅՈՒԿ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՍՌՄ ժողովուրդների մեծ բարեկամությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը մեր ուժն է, կոմունիզմի գալիք հաղթանակների գրավականը, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1961։*

Ժողովուրդների լենինյան բարեկամության դրոշով, նյութեր Հայաստանում էստոնական արվեստի շաբաթի հանդիսավոր բացման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 13-ի համարում։*

Բարեկամության տոնահանդես, նյութեր էստոնական արվեստի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 20-ի համարում։*

## 2. Բարձր ցուցանիշներով կատարենք շինարարության պլանները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Շինարարության ղեկավարումը բարելավելու վերաբերյալ ՍՄԿԿ XXII համագումարի որոշումների կատարման ընթացքի մասին, *զեկուցում ՀԿԿ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 24-ի համարում։*

Մտքերի փոխանակություն ՀԿԿ Կենտկոմի պլենումում ընկ. Յա. Ն. Զարոբյանի զեկուցման շուրջը, *ինֆորմացիոն հաղորդագրություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 25-ի համարում։*

Պատրաստել տեխնիկապես գրագետ բանվորական կադրեր, *«Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 25-ի առաջնորդողը։*

## 3. Երկրին տանք ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Դեպի մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձը, թղթակցություններ ստանձնած պարտավորությունները կատարելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 25-ի համարում։*

Միշտ բարձր կպահենք մրցության դրոշը, *հոդված, տպագրված «Ս. Հ.-ի 1964 թ. սեպտեմբերի 10-ի համարում։*

Արտադրել առանց վնասի, ամենօրյա կարևոր գործ, *հոդված խնայողության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 4-ի համարում։*

## 4. Անկորուստ հավաքենք առատ բերքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բերքը կանչում է բոլորին, ուր կոմբայնավարների պատասխան խոսքը բասարգեչարցիներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հուլիսի 19-ի համարում։*

Բերքահավաքի և հացամթերումների ստուգման տասնօրյակ, *թղթակցություններ բերքահավաքի և մթերումների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 3-ի համարում։*

Արագացնել բերքահավաքի և հացամթերումների տեմպը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 9-ի առաջնորդողը։*

## 5. Լենինյան կոմերիտմիության 46-րդ տարին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության մասին, *առանձին գիրք, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է, *ՍՄԿԿ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից։*

Պարտիան և կոմերիտմիությունը, *ՍՄԿԿ կանոնադրություն, մաս VII։*

Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդության միության կանոնադրությունը։

## 6. Սովետական Միությունը խաղաղության ամենաջերմ պաշտպանն է աշխարհում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ելույթ Մոսկվայի ռադիոյով և հեռուստատեսությամբ, 1964 թ. սեպտեմբերի 7-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 8-ի համարում։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Ճառ Մոսկվայում տեղի ունեցած սովետահնդկական բարեկամության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 19-ի համարում։*

## Երկաթուղի ալյումինից

*Երբ ասում ենք երկաթգիծ, անմիջապես պատկերացնում ենք պողպատյա ռելսեր, և դրանց վրայով ընթացող շոգեքարշեր ու լոկոմոտիվներ, որոնք նույնպես պատրաստված են պողպատից։ Բայց այս նոր ճանապարհը այլևս չի կարելի անվանել երկաթգիծ, որովհետև այնտեղ իսպառ բացակայում է պողպատը։ Գծի ամբողջ մետաղյա մասերը, ինչպես նաև ռելսերը, գնացքներն ու լոկոմոտիվները պատրաստված են ալյումինից։*

*Այս փորձնական գիծը գիտահետազոտական նպատակներով պատրաստել են ԱՄՆ-ի Լաս-Վեգասի գիտահետազոտական կենտրոնում, որը ենթարկվում է ԱՄՆ-ի ատոմային էներգիայի հետազոտող հանձնաժողովին։ Ո՞րն է դրա առավելությունը։ Ալյումինե գիծը և վագոնները 10 անգամ ավելի քիչ են ընդունում ու վարակվում նյութերից և շատ ավելի շուտ են ազատվում «վարակից», քան պողպատը։*

*Գնացքի վրա կատարվող ամբողջ գործողությունը՝ բեռնումը և բեռնաթափումը, գնացքի ղեկավարումը վստահված է ավտոմատ գործիքներին ու սարքերին, որոնք ղեկավարվում են հեռու տարածությունից։*

## Կեր թռչնի փետուրից

*Կեր թռչնի փետուրի՞ց, կզարմանաք դուք։ Այո։ Փետուրից կեր ստանալու մեթոդը և ռեցեպտը մշակել ու ստացել են Չեխոսլովակիայում։*

*Հայտնի է, որ փետուրը իր մեջ պարունակում է չորս անգամ ավելի շատ սպիտակուցներ, քան տավարի միսը, բայց միայն ոչ յուրացված ձևով, այսինքն կենդանու օրգանիզմը չի կարողանում այն յուրացնել։ Հենց այստեղ է, որ օգնության են գալիս գիտնականները։*

*Ջվի կճեպի և փետուրի հիդրոլիզման (ջրալուծման) շնորհիվ ստացվում է թանձր, բայց հաճելի բուրմունքով կեր (ապուր), որը մեծ հաճույքով ուտում են տնային թռչունները։ Այդ կերը մի քանի անգամ ավելի հարուստ է սպիտակուցներով, քան տավարի միսը։*





## ԿԱՐԴԱՑԵՔ ԱՅՍ ԳԻՐՔԸ

*Հայպետհրատը վերջերս լույս ընծայեց ամերիկյան գիտնական-բակտերիոլոգ ՊՈԼ ԴԸ ԿՐԱՅՖԻ* «Միկրոբներ որսողները» *գիրքը, որն առաջին անգամ հայերեն լույս է տեսել դեռևս 1933 թ.։ Իսկ 1961 թ. հայ ընթերցողն ստացել է հեղինակի մյուս գիրքը՝* «Պայքար մահվան դեմ»։

*Պոլ դը Կրայֆը ծնվել է ԱՄՆ-ում 1890 թվականին, բժշկական կրթություն է ստացել Միչիգանի համալսարանում։ Նա տպագրել է մի շարք հետաքրքիր հետազոտություններ բակտերիաների փոփոխականության մասին և հանրամատչելի ակնարկներ՝ մի շարք գիտնականների աշխատանքների վերաբերյալ։ 1922 թվականին Սինկլեր Լյուիսը նրան մասնակից դարձրեց բակտերիոլոգ-գիտնական Մարտին Էրոուսմիթի կյանքի վերաբերյալ իր վեպի աշխատանքներին։ Այդ վեպի համար նյութեր հավաքելու ընթացքում դը Կրայֆը սկսեց հետաքրքրվել միկրոբիոլոգիայի պատմությամբ, մանրամասն ուսումնասիրեց ժամանակակից միկրոբիոլոգիայի հիմնադիրների կյանքն ու աշխատությունները և ստեղծեց իր «Միկրոբ որսողները»։ Այդ գիրքը լույս տեսավ 1926 թվականին և մեծ հաջողություն ունեցավ, բազմիցս վերահրատարակվեց զանազան երկրներում։*

*«Միկրոբ որսողները» վարակիչ հիվանդությունների դեմ տարվող պայքարի հիմնադիրների ու մի-ջինավոր կյանքեր պահպանող նրանց մեծ հայտնագործությունների մասին եղած գրքերից լավագույնն է և մեծ հետաքրքրությամբ է կարդացվում մեր երկրում։ Այն մի դյութիչ գիրք է համարձակ ու ազնիվ մարդկանց, համառ հետազոտողների, ճշմարտություն որոնողների ու երազողների մասին, որոնք տարբեր ժամանակներում և տարբեր երկրներում մարտնչել են մարդկության դաժան թշնամու՝ հիվանդաբեր միկրոբների դեմ։ Նրանց աշխատանքը սխրագործություն է, և պատահական չէ, որ «Միկրոբ որսողները» ընթերցվում է սերնդեսերունդ։*

*Հետաքրքրական է այս գրքում հեղինակի գտած գրական նոր ժանրը։ Նա մեծ հայտնագործությունների մասին պատմում է որպես հասարակ մարդկանց մտքի ու ձեռքի գործի մասին, պատմում է նաև նրանց թերությունների, սխալների ու անհաջողությունների մասին, որը, իհարկե, չի նսեմացնում ոչ այդ գիտնականների հեղինակությունը, ոչ էլ նրանց հայտնագործությունները, այլ ներդաշնակում է այն իսկական պաթոսին, որը հնչում է միկրոբների մասին գիտության և մարդկային մշակույթի նոր դարաշրջան բացող դեպքերի շարադրանքում։*

*Սովետական մարդկանց չի կարող չհուզել Պոլ դը Կրայֆի հերոսների անձնուրաց ծառայությունը գիտությանն ու ժողովրդին։*

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ԲԱՑՎԱԾ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի
1965 թվականի
բաժանորդագրությունը.
1 ամիսը — 15 կոպեկ
6 ամիսը — 90 կոպեկ
12 ամիսը — 1 ռուբ. 80 կոպեկ
«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

# № 19
# 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 08499* *Պատվեր 855* *Տիրաժ 8938*

*Հանձնված է արտադրության 23/IX 1964 թ.։*
*Ստորագրված է տպագրության 3/X 1964 թ.։*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,*

*Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*